Այս ուղղութեամբ առեղծուած յառտեսութիւնը տակաւին չէ մեղմացած :

Միջազգային մամուլը եւ կիսապաշտօնական շրջանակները գրեթէ միաձայնութեամբ կը յայտարարեն թէ Մաքմիլլըն ճամբորդութիւնը ձախողութիւն մը եղաւ : Ընդհակառակն, վարչապետը կը մտածէ թէ տակաւին կարելի է « բան մը ընել» : Իր արտասանած բոլոր ճառերուն մէջ ան շեշտը կը դնէ բանակցութեան եւ խաղաղութեան վրայ : Այս է պատճառը, որ հաւանական կը թուի Խրուշչեւ–Մաքմիլլըն վերջին հանդիպում մը :

Անգլիոյ Վարչապետը ամէն ճիգ պիտի թափէ որպէսզի խորհրդային իր պաշտօնակիցը ընդունի նախապատրաստական ժողովի մը արեւմտեան առաջարկը՝ Մեծերու հանդիպումէն առաջ :

Միւս կողմէ, Ռոստովի մէջ արտասանած «ընտրական» ճառի մը մէջ Ա. Միկոյեան յայտարարեց .— Եթէ Արեւմտեանները մերժեն Գերմանիոյ հետ խաղաղութեան դաշինք մը կնքել, Խ. Միութիւնն ու ընկերվարական միւս երկիրները խաղաղութեան դաշինք մը պիտի կնքեն Արեւելեան Գերմանիոյ հետ : Օրինաւոր համաձայնութիւն մը պիտի ըլլայ ան եւ մեծապէս պիտի նպաստէ խաղաղութեան :

× Անգլիոյ նախկին Վարչապետ Իտըն յայտարարեց թէ Արեւմուտքը չի կրնար հրաժարիլ Պերլինի իր խարխսներէն : Միջազգային ներկայ կացութիւնը շատ ծանր է, ըսաւ ան, բայց յանկարծահաս չէ : Բոլոր Արեւմտեանները համաձայն են Ատլանտեան Ուխտի եւ Պերլինի վերաբերեալ իրենց քաղաքականութեան մէջ :

Անդրադառնալով ոչ–յարձակողական դաշինքի հարցին, Իտըն ըսաւ .— Նոր դաշնագիր մը առաջարկուեցաւ Անգլիոյ, Ռուսերուն կողմէ : Չեմ կրնար մտածել թէ իմ երկիրս կրնայ ընդունիլ նման դաշինք մը, մինչ ներկայ սպառնալիքը տակաւին կը մնայ Պերլինի վերեւ : Ատլանտեան Ուխտը միացեալ պէտք է մնայ :

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

ԽԼՄԱՍԵԱՆ ԵՐՐԵԱԿԸ որ ծանօթ է արդէն Փարիզի գեղարուեստական շրջանակներուն, կը ներկայացնէ իր նոր ստեղծագործութիւնները .—

« Արեւելեան Աշխարհը մանրանկարներով » :

Կազմակերպութեամբ՝ Մառի–Քլէռ հաստատութեան եւ բարձր հովանաւորութեամբ Լիբանանի դեսպան՝ Պ. Մուսա Մուպառաքի : Ցուցահանդէսին պաշտօնական բացումը Մարտ չորսին : Բաց է ամէն օր բացի կիրակիէ եւ երկուշաբթիէ ժամը 10էն 18 :

(10, Րիւ տը Ռոմ) :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Նորայր Սահաթճեան եւ Օր. Պէատրիս Սահաթճեան ներկայիս կը փութան իրենց սրտագին շնորհակալութիւնը յայտնել բոլոր այն յարգելի անձերուն, որ յուղարկաւորութեան մասնակցելով, այցելութեամբ, հեռագրով եւ նամակով հաճեցան ցաւակցութիւն յայտնել իրենց տարաբախտ քրոջ՝ ողբացեալ

ՕՐ. ԱՐՈՒՍԵԱԿ ՍԱՀԱԹՃԵԱՆԻ

մահուան առթիւ :

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## Ս. ՎՐԱՑԵԱՆ
## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Բ. Տպագ., յաւելեալ եւ ճոխացեալ
Քառասնամեակի առթիւ
Զարդարուած բազմաթիւ նկարներով
Մեծադիր 684 էջ, կազմուած :
ԳԻՆ 4000 ՖՐԱՆՔ
Թղթատարի ծախքով 4·350 Ֆր. :
Դիմել՝
Գրատուն՝ Հ. ՍԱՄՈՒԷԼԵԱՆ
51 Rue Monsieur-le-Prince, Paris (6e)

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
## ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Ս. Մուրատեան վարժարանի աշակերտութեան կողմէ :
Ապրիլ 3, Ուրբաթ իրիկուն ժամը 20·30ին
Մանրամասնութիւնները՝ յաջորդով :

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՊՈՄՈՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

## ԹԱՏԵՐԱԿԱՆ
## ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Պոմոնի Ս. Սահակ – Մեսրոպ սրահին մէջ, Շաբաթ (7 Մարտ), ժամը 21ին :

Ղեկավարութեամբ Պ. ՆԱԲՈԼԷՈՆ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ :

Կարտանի Նոր Սերունդի Թատերախումբը կը բեմադրէ՝

Զուարթ օփերէթ

## ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ

## Կ'ՈՒԶՈՒԻ
## ՍՏԻՊՈՂԱԿԱՆ

Ստիպողաբար կը փնտռուի երիտասարդ Հայուհի մը, կրթուած, հայախօս որ ընտանիքի մը մէջ (Պրիւսէլ) զբաղի միայն երեք երախաներով (մէկը դպրոց կ'երթայ, միւս երկուքը՝ 3ուկէս եւ մէկուկէս տարեկան) : Տնական ոչ մէկ աշխատանք : Բնակութիւն, ուտելիք եւ ամսական 15000 Ֆր. Ֆրանք :

ԴԻՄԵԼ ԱՆԶԱՄԲ Թերթիս վարչութեան :

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## 28ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ
## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ
## ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կազմակերպուած Շրջանին երէցներու, Արենոյշներու, Արիներու եւ Գայլիկներու կողմէ, եւ մասնակցութեամբ ֆրանսական եւ օտար սկաուտական կազմակերպութեանց :

Կիրակի, Մարտ 8, կէսօրէ վերջ ժամը 2·30ին :

**Centre Marcelin Berthelot**
28 bis, Rue St. Dominique, Paris 7
Métro : Invalides

Հայկական պարեր եւ երգեր, սկաուտական կեանքէ ներկայացումներ եւ խաղեր :

Կը ներկայացուի ֆրանսերէն՝
« ԾԱԽՈՒ ՈՒՐՈՒԱԿԱՆԸ »
Զաւեշտը եւ հայերէն՝
« ԱՆԶՐԵՒՈՏ ԳԻՇԵՐ ՄԸ
եւ «ՓՐՕՖԷՍԷՕՐԻՆ ԳԻՏՍԸ »

կատակերգութիւնը Արիներու եւ Արենոյշներու կողմէ :

Առաջին անգամ ըլլալով «Պարսկական պազարին մէջ», պալէ սկաուտներուն եւ Արենոյշներուն կողմէ :

Ցուցադրութիւն, պիւֆէ :

Մուտք 500 եւ 300 ֆրանք :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

Կը տօնուի Մարսէյլի մէջ, Ապրիլ 26–ին, կէս օրէ վերջ, Սալոն Մազընոյի մէջ, (Րիւ տ'Օպանեը) :

Նախաձեռնութեամբ Կ. Խաչի Մարսէյլի Շրջ. վարչութեան եւ մասնակցութեամբ շրջանի մասնաճիւղերուն :

## ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

4 Մարտ, Չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Սալ Շոփէնի մէջ :

## ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

Չորրորդ պտոյտ, Հայ գրականութեան պարտէզին մէջ :

ՄԵՐ ՍԻՐՈՅ ԱՌԱՐԿԱՆԵՐԸ :

Տոմսերը՝ 300, 400 եւ 600 ֆր. :

Կը ծախուին գրատուններ .— Հ. Բալուեան, Մ. Պարսամեան :

Երեկոյթը կը սկսի ճիշդ ժամը 9ին եւ կը վերջանայ ժամը 11·15ին :

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ԳԱՂԹԱԿԱՆԱՑ ԳՐԱՍԵՆԵԱԿԻՆ
Նոր հասցէն է՝
Hôtel Majestic
Avenue Kleber (métro Kleber)
(Մուտք՝
23, Rue La Perouse
Հեռաձայնի թիւը կը մնայ նոյնը՝
KLE. 22-05

Գրասենեակը փակ է կէսօրէ վերջերը եւ մարդ չընդունիր :





ՖԵՐԱԹ ԱԲԱՍ ալժերիական «կառավարութեան» վարչապետը Շաբաթ օր Սէուտական Արաբիա մեկնեցաւ ուր հրաւիրուած է Թագաւորին կողմէ։

ԹՈՒՆՈՒԶԻ Նոր Տեսթուրեան կուսակցութեան համագումարը վերջացաւ։ Պուրկիպա յայտարարեց թէ «Աշխարհակալները կը կարծեն թէ շնորհիւ Թունուզի է որ Ալժերիոյ ժողովուրդը կը շարունակէ իր պայքարը։ Մենք չենք պատերազմիր Ալժերիացի ազգայնականներուն կողքին, բայց համախոհ ենք այդ պայքարին»։

ՍՈՒՏԱՆԻ մէջ զօրավար Ապուտ առաջքըն առաւ պետական հարուածի մը տեղի տալով երկու զօրավարներու որ տէրն են Խարթումի ռազմական կէտերուն։ Ապուտ իր դահլիճէն հեռացուց կարգ մը մարդիկ եւ նշանակեց երեք նորեր։ Ինք կը մնայ սակայն այս նոր «Գերագոյն Խորհուրդի» ղեկավարը։

ՆԱԽԱԳԱՀ ՊՈՒՐԿԻՊԱ առջի օր չահեկան տեսակցութիւն մը տուած էր Մոնտին։ Թունուզի նախագահը յայտնած է թէ թերահաւատ է Ալժերիոյ պատերազմին համար.— Վեց ամիսէն եկէք զիս տեսնելու, նոյն տեղը պիտի ըլլայ Ալժերիոյ պատերազմը։ Իմ կարծիքով նուազ հաւանական է քան 9 ամիս առաջ երբ Տը Կօլ գործի գլուխ եկաւ։ Երբ իրեն հարց տրուած է թէ այդ պայմաններու մէջ ինչո՞ւ Տը Կոլը տեսնել կ'ուզէ, Պուրկիպա պատասխանած է։ «Գիտէք կարծիք մըն էր յայտնեցի, բայց չեմ պնդեր։ Ձեմ կարծեր որ նման հանդիպում մը կրնայ օգտակար ըլլալ։ Տը Կօլ շատ բարի կամեցողութիւն ունի, այնպէս չէ՞, բայց գործնական գետնի վրայ անկարող է։ Չի կրնար բանակցիլ, տէրը չէ ալժերիական իր քաղաքականութեան։

ՊԱՔՈՒԻ ձայնասփիւռը խստօրէն քննադատեց Պարսկաստանի եւ Ամերիկայի կնքած դաշինքը։ Մոսկուայի ձայնասփիւռն ալ արաբերէն լեզուով շեշտեց թէ Անգարայի համաձայնագրերը ծանր սպառնալիք մըն են Միջին Արեւելքի խաղաղութեան համար։

## ՊԱՏՄԱԳԷՏ ԵՒ ՀՆԱԳԷՏ ՈՂԲ. ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆԻ

Յիշատակին յարգանքի երեկոյթ մը կազմակերպուած է։

21 Մարտ, Շաբաթ երեկոյեան, ժամը 21ին, Սալ տէ Սիթօ, Փարիզ։

Հովանաւորութեամբ Գերաշնորհ Սերովբէ եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆի։

Խօսք պիտի առնեն ծանօթ հնագէտ Փրոֆ. Քավէնեաք եւ ուրիշներ

Գեղարուեստական ճոխ բաժին։

Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն յարգել իր յիշատակը եւ ներկայ ընդունիլ իբր հրաւէր։

Մուտքը ազատ է։

## ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դպրոցասէր Տիկնանց Վարժարանին սանուհիներու գեղարուեստական ցերեկոյթը Ապրիլ 19ին, Սալ Շոփէնի սրահին մէջ։

×

ԹՈՔԱՏԻ Հայր. եւ Բոնի Սու Պուայի Մշակ Միութեան հանդէսը՝ Պալաքեան Սրբազանի եւ վեց քահանաներու շիրիմի ի նպաստ, 4 Ապրիլ, Շաբաթ գիշեր։

×

Սեբաստիոյ Նահանգային Մուրատ Ուսումնասիրացի ցերեկոյթը՝

ՄԱՐՏ 22ԻՆ

Իսիի Թաղապետարանին սրահը։

Մանրամասնութիւնները յաջորդիւ։

## ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵՆԷՆ ԹՈՇԱԿԻ ՅԱՏԿԱՑՈՒՄ ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԷՋ

ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ աղնուամեծար վարիչները Մուրատեան վարժարանի տեսչութեան առաջարկին ընդառաջ երթալով որոշած են 1959 – 1960ի դպրոցական տարեշրջանէն սկսեալ հինգ գիշերօթիկ սան պահել հետեւեալ պայմաններով ։

1.— Պատանին (11 – 12 տարեկան) պէտք է ըլլայ հայ չքաւոր ընտանիքի զաւակ, ուշիմ, աշխատասէր եւ բարեկիրթ ։

2.— Զարգացումը պէտք է համապատասխանէ ֆրանսական երկրորդական վարժարանի վեցերորդ դասարանին ։

3.— Թեկնածու չեն կրնար ըլլալ արդէն իսկ վարժարանս յաճախող աշակերտներ ։

4.— Սան մը որ չկարենայ անցնել տարեվերջի քննութիւնները կը կորսնցնէ ամէն իրաւունք ։

5.— Ընտրութիւնները պիտի կատարուին վարժարանիս մէջ մրցումով եւ քննութեամբ, որ տեղի պիտի ունենայ յառաջիկայ Մայիս 18էն 24 օրերու ընթացքին, ժամը 15 – 17ին։

Կը պահանջուին դպրոցական վկայականներ ։

Գրել Տեսչութեան.—

DIRECTION DU COLLÈGE ARMÉNIEN
26, RUE TROYON, SÈVRES - S. & O.

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ»
Փարիզի մէջ, նախաձեռնութեամբ Հ.Յ.Դ. Ահարոնեան խումբին ։
ՄԱՅԻՍ 2ԻՆ

×

Մարտ 28 եւ 29
Լիոն (28), Մարսէյլ (29)
Փառատօն, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի ։

×

Վասպուրականի հերոսամարտին 44րդ տարեդարձը Տէսինի մէջ, Շաբաթ, Ապրիլ 11ին։

Վասպուրականի հերոսամարտին 44րդ տարեդարձը Վիէնի մէջ Մայիս 2ին ։

×

Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերով կը տօնէ Կապոյտ Խաչի օրը, 12 Ապրիլին, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ ։

×

Մեծ պարահանդէս, կազմակերպուած Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան կողմէ, 22 Մարտ Կիրակի ժամը 16–24, Սէրքլ Միլիթէրի ընդարձակ սրահը ։

×

Սեբաստիոյ նահանգի Մուրատ Ուսումնասիրացի գեղարուեստական երեկոյթը Մարտ 22ին։

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ
Գեղարուեստական ցերեկոյթ, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ, 10 Մայիս 1959

×

Նախկին Սամաթիացիներու պարահանդէսը Ապրիլ հինգին, Անպասատէօրի շքեղ սրահներուն մէջ։ Մանրամասնութիւնները յաջորդիւ ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Կեդրոնի Կրթ. Յանձնաժողովը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները։

Տէր եւ Տիկին Բարունակեան եւ Տէր եւ Տիկին Աթալլահ հինգ հազար փրանք իրենց հօր, պր. Մինաս Աթալլահի մահուան առթիւ ։

Այրի Տիկին Արաքսի Գալըպճեան հինգ հազար փրանք իր սիրեցեալ ամուսնոյն պր. Յակոբ Գալըպճեանի մահուան առթիւ ։

Պ. Յովակիմ Յովակիմեան հինգ հազար փրանք նոյն առթիւ ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ՕՐ»Ը
Առնուվիլի մէջ
ՄԱՐՏ 15ԻՆ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

Կը տօնուի Մարսէյլի մէջ, Ապրիլ 26–ին, կէս օրէ վերջ, Սալոն Մազընոյի մէջ, (Րիւ տ'Օպանյը)։

Նախաձեռնութեամբ Կ. Խաչի Մարսէյլի Շրջ. վարչութեան եւ մասնակցութեամբ շրջանի մասնաճիւղերուն ։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Արշակ որդի Յարութիւնի, Աստոյեան, ծնած 1923, Նոյեմբեր 25ին Լենինական, մօրը անունը՝ Շուշանիկ, եղբօր՝ Գուրգէն, քրոջը Սվետլանա։ 1943ի հայրենական պատերազմէն ետք լուր չկայ։ Կը կարծուի որ Կանատայի մէջ աշխատած է կօշկակար Գեղամի մօտ (Զոհրապի որդին), ապա անցած՝ Մարսէյլ։

Փնտռողն է մայրը։

Լուր ունեցողներէն տեղեկացնել Պ. ՏՆԿՈՅԵԱՆի,

215-217, RUE DE BELLEVILLLE, PARIS 19

Imprimé sur les presses du journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, 17 Րիւ Պլէօ ։

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ԶԱՏԻԿԻՆ

(29 Մարտ) Ալհամպրայի մէջ ։
Մանրամասնութիւնները մօտ օրէն ։

**Salle Gaveau**
45, Rue la Boëtie
Մարտ 10, Երեքշաբթի, ժամը 21ին

## ՍԵԴՐԱԿ ԵԱՎՐՈՒԵԱՆ

(Դաշնակահար)

Յայտագիր՝ ՊԱԽ – ՊԻՒԶՕՆԻ, ՊԷԹՕՎԷՆ, ԼԻՍԹ, ՇՕՓԷՆ ։

Տոմսերու գին.— 300էն 1000 Ֆրանք ։
Դիմել սրահը եւ Տիւրանին ։

ՓԱՐԻԶԱՀԱՅ
ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ
**ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՐՄՆԻՆ**
կազմակերպած
ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ
ՄԻՋԻՆՔԻ ԱՌԹԻՒ
ՀԻՆԳՇԱԲԹԻ, ՄԱՐՏ 12ԻՆ
ժամը 14.30էն 18.30
PAVILLON DAUPHINE

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

26 տարեկան երիտասարդ մը (ծնած Փարիզ 4րդ Թաղամաս 1932 Նոյեմբեր 14ին) կը փնտռէ իր մայրը՝ ՎԻՆԺԻՆԻ ԳՐԵԳՈՒՆԵԱՆ, ծնած Մարաշ 1892ին։
Տեղեկացնել իրեն՝

Krekounian Jean
S.P. 86639 A.F.N.
կամ Թերթիս վարչութեան ։











# ՈՒՇԱԳՐԱՒ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ ՄԸ Յ. ՍՎԱՃԵԱՆԻ ՄԱՍԻՆ

ԽՄԲ.— Երեւանի «Գրական Թերթ»ին մէջ Վ. Միքայէլեան շահեկան գրախօսական մը գրած է Գ. Գասպարեանի «Յարութիւն Սվաճեան» գրքին մասին: Ստորեւ՝ գլխաւոր մասերը, արեւմտահայերէնի վերածուած:

*Հայպետհրատը լոյս ընծայած է Գ. Գասպարեանի «Յարութիւն Սվաճեան» ուսումնասիրութիւնը: Ծաւալով ոչ շատ մեծ, բայց ուշագրաւ եւ գիտական բովանդակութեամբ աշխատութիւն մը:*

*Սվաճեան ընկերային եւ գրական բեղուն աշխատանք մը ունեցաւ այնպիսի ժամանակաշրջանի մը՝ երբ, մէկ կողմէ, Թրքական բռնապետական կարգերը կ'ապրէին իրենց քայքայումն ու նեխումը, իսկ միւս կողմէ, հետզհետէ կը ծաւալէր սուլթանական տիրապետութեան ներքեւ հեծող ժողովուրդներու՝ Պալքաններու, Յոյներու եւ Հայերու ազատագրական պայքարը: Այսինքն՝ անցեալ դարու 50-60ական Թուականներուն, երբ հայ ժողովուրդի ազգային – ազատագրական պայքարը իր վրայ բեւեռած էր արեւելահայ թէ արեւմտահայ գործիչներու ուշադրութիւնը: Ազգային – ազատագրական շարժումը առանցքի այն հարցն էր՝ որուն հանդէպ իրենց ունեցած վերաբերումով կը բնորոշուէր ընկերային տարբեր հոսանքներու վարքագիծը:*

*Սվաճեան արեւմտահայ դեմոկրատական շարժման ականաւոր ներկայացուցիչն էր, յեղափոխական Միք. Նալբանդեանի արժանի զինակիցն ու հետեւորդը: Այս մեկնակէտը նկատի ունենալով, Գ. Գասպարեան իր ուսումնասիրութիւնը սկսած է Սվաճեանի ձօնուած Նալբանդեանի ուղերձին վերջին քառեակով.—*

Քեզ սիրեց Հայաստան, քեզ օրհնում է
բիւր բերան,
Քեզ դափնի պսակներ հիւսում է ապագան:
Ընդունի՛ր այս երկտող իմ անշուք հիւսուածքը,
Պակասը թո՛ղ լցնէ, սիրած իմ, քո ազգը:

*Իր հիմնական նպատակը համարելով «տալ Սվաճեանի գործունէութիւնը եւ այն անձնական ու գաղափարական առընչութիւնները, որոնք առկայ են եղել Յ. Սվաճեանի եւ Մ. Նալբանդեանի միջեւ», Գ. Գասպարեան յաջողած է. իր աշխատութեան մէջ ընդգրկած է հարուստ նիւթեր, զանոնք վերլուծած եւ ապա՝ ընդհանրացուցած:*

*Այս ուսումնասիրութեան ուշագրաւ կողմերէն մէկն ալ այն է, որ անցեալ դարու երկրորդ կիսուն հայ կեանքի պատուարժան ներկայացուցիչներէն մէկուն գործունէութիւնը շարադրուած է ոչ թէ ժամանակէն ու դէպքերէն անջատ, մեկուսացուած, այլ՝ ժամանակաշրջանի ընդհանուր թոհուբոհի, հայ ընկերային կեանքի իրադարձութեանց հետ կապակցուած: Իզուր չէ, որ գրքին առաջին գլուխը կը կրէ «Ժամանակն ու միջավայրը» վերտառութիւնը: Բայց այստեղ ալ պէտք է չեշտենք, թէ հեղինակը այդ առիթը չէ չարաշահած՝ ընդհանուր դէպքերուն ընդարձակ տեղ յատկացնելու իմաստով: Անոնց լուսաբանութիւնը այդքանով տեղ գտած է, որքան որ անհրաժեշտ է Սվաճեանի կեանքն ու գործը աւելի բազմակողմանի լուսաբանելու համար:*

*Ժամանակի եւ միջավայրի ամփոփ բնութագրումով՝ հեղինակը ցոյց տուած է, որ ի տարբերութիւն ազատական քաղքենի եւ ամիրայա – կղերա – պահպանողական հոսանքի, դեմոկրատ հոսանքը կը ձգտէր ոչ միայն հայ ժողովուրդի ազգային – ազատագրութեան, այլեւ զայն կը նկատէր իբրեւ «անհրաժեշտ, նախապայման սոցիալ – տնտեսական ազատագրութեան»:*

*Հետաքրքրութեամբ կը կարդացուի նաեւ գրքին երկրորդ բաժինը, ուր տրուած է Սվաճեանի կեանքին ու գործունէութեան ամփոփ շարադրութիւնը: Յայտնի է որ Սվաճեանի գործունէութիւնը կապուած է արեւմտահայ քննադատութեան, հրապարակախօսութեան, թատերգութեան, երգիծանքի եւ ծաղրանկարչութեան հետ: Հեղինակը լայն տեղ յատկացուցած է 1856ին Սվաճեանի հիմնադրած «Մեղու» կիսամեայ հանդէսի բազմաբեղուն աշխատանքներուն: Հարուստ փաստերու մէջբերումով յաջողած է ցոյց տալ որ Նալբանդեան եւ Սվաճեան «Մեղու»ն դարձուցած էին հայ յեղափոխական շարժման կեդրոնական օրգանը: Ինչպէս չեշտուած է գրքին մէջ, «Մեղու»ն այդպէս կը մնայ ոչ միայն Մ. Նալբանդեանի բանտարկութենէն եւ մահէն յետոյ, այլեւ՝ Սվաճեանի մահէն յետոյ՝ «Նրա արժանաւոր աշակերտ Յակոբ Պարոնեանի խմբագրութեամբ «Թատրոն» վերանուանմամբ հրատարակուելիս»:*

*Սվաճեանի ուշադրութեան կեդրոնը եղած են արեւմտահայ բեմն ու թատերգութիւնը: Խօսելով Սվաճեանի գործունէութեան այդ կողմի մասին, Գ. Գասպարեան վեր հանած է այն նշանաւոր դերը, որ Մ. Պէշիկթաշլեանի, Ս. Հեքիմեանի եւ Ա. Հայկունիի հետ միասին խաղցած է Սվաճեան արեւմտահայ թատրոնի հիմնադրման եւ զարգացման գործին մէջ: «Մեղու»ի ընդհատման ժամանակէն՝ 1865, Սվաճեան մեծ ուշադրութիւն կը դարձնէ թատրոնին: Կը գրէ «Առանձար Ամատունի» պատմական ողբերգութիւնը, որուն ներկայացումը լաւ ընդունելութիւն կը գտնէ:*

*Գրքին մէջ լայն քննարկման առարկայ դարձած հարցերէն մէկն է՝ Արեւմտահայերու Սահմանադրութիւնը: Սվաճեան սկիզբը պատրանքներ ունէր այդ Սահմանադրութեան նկատմամբ: Կը կարծէր թէ ազգային Սահմանադրութիւնը հնարաւորութիւն պիտի տար «սահման մը դընել» ներքին եւ արտաքին բռնաւորներու կամայականութիւններուն: Գ. Գասպարեան կը գրէ թէ այդ «իրաւունքները ոչ միայն չնչին էին, այլեւ սնանկ յայտարարութիւններ, որ արուած էին սուլթանական կառավարութեան եւ ազգային իշխանութեան կողմից»: Յետագային Սվաճեան կը պաշտպանէ Սահմանադրութիւնը՝ իբրեւ յեղափոխական ծրագրի իրագործման հնարաւորութիւն:*

*Մինչեւ Մ. Նալբանդեանի հետ սերտ կապերու հաստատումը՝ Սվաճեան ազատական էր: Այս գրքին մէջ առանձին գըլուխով քննարկուած է Սվաճեանի շրջադարձը ազատական դիրքերէն՝ դէպի յեղափոխութիւն: 1860 – 1861ին Սվաճեան վճռականօրէն կը կանգնի յեղափոխական դիրքերուն վրայ: Ապացուցանելու համար այս պարագան՝ Գ. Գասպարեան կը դիմէ բազմաթիւ փաստերու, որոնք կը վկայեն Յ. Սվաճեանի եւ Մ. Նալբանդեանի միջեւ եղած սերտ կապերը: Այս առիթով ուշագրաւ են հեղինակին կողմէ կատարուած «Մեղու»ի շարք մը յօդուածներու լուսաբանումը, ինչպէս նաեւ Նալբանդեանի Պոլիս ժամանելու, այնտեղ երիտասարդական ընկերութիւն կազմակերպելու փաստերու մեկնաբանումը, անոնցմէ կատարուած ընդհանրացումները:*

*Գ. Գասպարեան լուրջ աշխատանք կատարած է: Յաջողած է սեղմ գիծերով լուսաբանել 19րդ դարու 50 – 60ական Թըւականներու հայ ընկերային – քաղաքական կեանքի մեծ ներկայացուցիչ՝ Յ. Սըվաճեանի կեանքն ու գործը:*

ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

# ՆԻԱՍԱԼԱՆՏԻ ԴԷՊՔԵՐԸ

*Նիասալանտ, որ Ափրիկէի մէջ անգլիական հովանաւորութեան տակ գտնուող 122.722 քառ. քմ. տարածութեամբ եւ մօտ 2.5 միլիոն բնակչութեամբ հողամաս մըն է, քանի մը օրէ ի վեր թատերաբեմը դարձած է ապստամբական շարժումներու, սպիտակամորթերու դէմ կատարուած յարձակումներու եւ սպանութիւններու: Վեց տարիէ ի վեր այս հողամասը մաս կը կազմէր Ռոտէզիա–Նիասալանտ Համադաշնակցութեան, որ առաւելաբար կը կառավարուի Հարաւային Ռոտէզիա հաստատուած սպիտակամորթ գաղթականներու կողմէ:*

*Ծայր տուած շարժումը անխուսափելի էր եւ ուշ կամ կանուխ պիտի սկսէր. բայց քաղաքագէտները չէին կարծեր որ Համադաշնակցութեան ստեղծումէն այսքան քիչ ժամանակ վերջը ծայր պիտի տար: Միւս կողմէ, իրողութիւն է, որ Ափրիկէի մէջ դէպքերը նախատեսուածէն շատ աւելի արագ կ'ընթանան:*

*Շատ մը անձեր, մասնաւորաբար Հարաւային Ափրիկէի սպիտակամորթ բնակիչները, Պելժիական Քոնկոյէն մինչեւ Նիասալանտ տեղի ունեցող շարժումներուն եւ բռնութիւններուն ետին կը տեսնեն անցեալ Դեկտեմբերին Աքքրայի մէջ գումարուած Ափրիկեան Պետութիւններու Համագումարին ազդեցութիւնը: Որոշ է, որ այս համագումարը, եթէ նոյնիսկ շարժումներուն կազմակերպիչ գլուխը չէ, գոնէ արագացուց դէպքերուն ընթացքը՝ Ափրիկէցիներուն մէջ իրերօգնութեան զգացումը զարթեցնելով եւ ժողովուրդները շարժման մղելով:*

*Բայց, բացատրելու համար, թէ ինչո՞ւ ապստամբական շարժում սկսած է Նիասալանտի մէջ, մինչ Ափրիկէի անգլիական միւս հողամասերուն մէջ հանդարտութիւն կը տիրէ, անհրաժեշտ է հասնիլ մինչեւ չարիքին արմատը, այսինքն՝ Ռոտէզիա – Նիասալանտ Համադաշնակցութեան ներկայացուցած վիճակին:*

*Նիասալանտ ընդունուած էր Հիւսիսային եւ Հարաւային Ռոտէզիաներու դաշնակցային միութենէն ներս, այն գլխաւոր պատճառով, որ չափազանց աղքատ, բազմամարդ եւ թերաճ երկիր մըն է: Նիասալանտի բնակիչները իրենց երկիրը այս համադաշնակցութենէն անջատելու յաջողին կամ ոչ, երկրին թշուառութենէն բան մը պիտի չփոխուի: Համադաշնակցութեան վարիչները կ'ուզէին Ռոտէզիաներու հանքային հարստութիւններուն ձգած շահը (տարեկան հինգ միլիոն անգլ. ոսկի) բաժնել համադաշնակցութեան մաս կազմող երկիրներուն միջեւ:*

*Եթէ այս կարգադրութիւնը վերջ գտնէ, Նիասալանտի ազգային եկամուտը մէկ երրորդ համեմատութեամբ զեղչուած պիտի ըլլայ: Եւ տրուած ըլլալով որ Նիասալանտի արտածութեան գլխաւոր նիւթը մարդկային աշխատանքն է, համադաշնակցութենէն հեռանալը այն հակասական հետեւանքը պիտի ունենայ, որ շատ աւելի մեծ թիւով Նիասալանտցիներ գործ փնտռելու պիտի երթան սպիտակամորթերու իշխանութեան ներքեւ գտնուող դըրացի հարուստ երկիրները, այսինքն՝ երկու Ռոտէզիաները եւ Հարաւային Ափրիկէ:*

*Ուրեմն ինչո՞ւ համադաշնակցութենէն հեռանալու այս շարժումը, որ վերջին քանի մը ամիսներուն ընթացքին շատ աւելի կազմակերպուած եւ ուժգին կերպով մէջտեղ ելաւ:*

*Շարժման հիմքերէն մէկը հոգեբանական է. Ափրիկէցիները կ'ուզեն իրենք ղեկավարել իրենց հողը: Երկրորդ հիմքերէն մէկն ալ՝ Հարաւային Ռոտէզիոյ մէջ հաստատուած սպիտակամորթ գաղթականներէն ունեցած իրենց վախն է: Այս տարուան վերջաւորութեան Նիասալանտ նոր Սահմանադրութեամբ մը պիտի օժտուի, իսկ 1960ին Լոնտոնի մէջ պիտի քննուի համադաշնակցութեան ընդհանուր կացութիւնը: Աֆրիկեան Ազգային Համագումարին ղեկավարները ժամանակը հասած կը նկատեն իրենց ուժը ցոյց տուող շարժում մը սկսելու՝ ազդեցու –*

# Ի՞ՆՉՊԷՍ ԸՄԲՈՍՏ ԿԸ ԴԱՌՆԱՆ

ԱՒԱԶԱԿՈՒԹԻՒՆԵՐ

ԵՒ ՍՊԱՆՈՒԹԻՒՆԵՐ

*Բայց գիշերը կոյր է: Թուրք մը չէր կրնար ըլլալ ան, մտածեց հայրս, որովհետեւ Թուրք մը չէր կրնար հասնիլ մինչեւ շեմը, կարծես գիտէր թէ հաւերը մինչեւ ուր հաւկիթ կ'ածէին:*

*Անհման այս տարիներու ընթացքին, անտառներ կը տապալէին, եւ տղաք կը ծնէին, որոնք պիտի կազմէին փոխուող առաջին զօրագունդերը: Անոնք կ'ապրէին հին պատմութիւններու եւ յուշերու մէջ: Իրենց վայրի նկարագիրը, անդադար սպառնացող ծուղակներու սարսափը ոչինչ կորսնցուցած էն իրենց շեշտէն եւ գոյնէն:*

*Այդ շրջանին, իմ գիւղիս մօտ սպաննուեցաւ զաւակը անոր՝ որ մեծ հայրս տարած էր «ճաշ»ի մը, դաւաճանութեամբ: Սպաննուածին կնքահայրն ու եղբայրները Թուրքիա հաստատուած էին, անկասկած՝ ծիլաններու վրէժխնդրութենէն հեռու մնալու եւ ոճիրը ժամանակի ընթացքին մոռցնել տալու համար:*

*Բայց Մոնթենեկրօ երթալու կամ անկէ գալու համար, հարկ էր անցնիլ այն գիւղէն ուր կ'ապրէին հայրս եւ իր եղբայրները: Մինչեւ իսկ, երբ այդ մարդը սպաննուեցաւ, ամբաստանութիւններ եղան ծիլաններու դէմ, բայց դատական ոչ մէկ հետապնդում կատարուեցաւ, քանի որ զայն Թուրք կը նկատէին: Գիշերային այս ոճիրը խորհրդաւոր մնաց: Մենք, տղաքս, կ'աճապարէինք գիտնալ թէ արդեօք մեծ հայրիկին վրէժը լուծուա՞ծ էր, իրականին մէջ այդ էր մեր մտահոգութիւնը, եւ ոչ թէ հետաքրքրութիւն եւ խղճահարութիւն: Հայրս հերքեց այն պարագան՝ թէ սպաննողը ինք էր: Ոչ ինք եւ ոչ ալ իրեններէն մէկը: Ո՛չ, ծիլանները մատ չունէին այս գործին մէջ: Ջոհը ոճրագործ մը չէր եւ ոչ ալ վրէժխնդրութեան արժանի մարդ մը:*

*Այդ օրերուն Միրքօ մօրեղբայրը վիրաւորուեցաւ: Սահմանապահ՝ մաքսանենգներ կը հետապնդէր, մտնելով մինչեւ Թրքական հողը: Մարդը, որ պահուած՝ կը սպասէր, կուրծքէն վիրաւորեց զայն, ծանրօրէն: Այդ վէրքը երբեք չբուժուեցաւ: Մօրեղբայրս զայն կրեց բազմաթիւ տարիներ, եւ, վերջապէս այդ վէրքը եղաւ իր մահուան պատճառը:*

*Այս դէպքէն յետոյ բաւական ժամանակ անցաւ: Եղբայրս ու ես երբ բացատէն կ'անցնէինք, ետեւէն այն վայրին՝ ուր զարնուած էր ան, միշտ կը կենայինք հոն, լուռ, կոկորդը սեղմուած, այն ժայռին մօտ՝ ուր հօրեղբայրը կռթնած էր իր գիտակցութիւնը կորսնցնելէ առաջ: Կ'ըսեն թէ մարդկային արիւն թափուած տեղը խոտ չի բուսնիր: Հօրեղբօր վիրաւորուած տեղը խոտը կը մնար մութ կարմիր գոյնով, նոյնիսկ գարնան, կարծես արիւն խմած էր. մեր արիւնը, ծիլաններու արիւնը, մեր նախնիքներուն արիւնը որ կը գտնուէր մեր երակներուն մէջ:*

*Երբ առանձին կ'անցնէի, այս յուզումը աւելի ուժեղ կը դառնար մէջս, նոյնիսկ՝ ողբերգութեան վայրը հասնելէ շատ առաջ: Անգամ մը, այս ժայռին վրայ, այն տպաւորութիւնը ունէի թէ անտառներու մէջ ապրող ամէն բան յանկարծ կը սառէր. համր, մարդկային մեռելի մը հըպած ըլլալու սարսափին մէջ քարացած: Ոչ մէկ աղմուկ՝ բացի սրտիս տրոփիւններէն: Ոչինչ կը տեսնէի, ոչինչ բացի լուռ միջատէ մը, որ կլոր կը դառնար այս ժայռին վրայ, հոն՝ ուր ինկած էր հօրեղբայրս: Մենութիւնը աւելի խոր կը թուէր: Ես, ոչ կրնայի մնալ այս ժայռին վրայ, ոչ ալ զատուիլ անկէ: Ինձ կը թըւէր մասնաւոր, հոն էր այդ ժայռը՝ որպէսզի վիրաւոր մը կարենայ կռթնիլ: Վէրքը բացուած կը տեսնէի, արիւնը կը տարածուէր հողին վրայ:*

*Ո՛ւր որ երթայինք՝ սուգերը կը ցըցուէին ճամբուն վրայ: Գերեզմաններ, գերեզմանաքարեր, ոճրագործութեանց յիշատակներ, ողբերգական արկածներ իրարու կը յաջորդէին: Կը մոռնայինք մեր թշնամիներուն ոճիրը, բայց ոչ մեր կորուստները, Մոնթենեկրոյիներու զոհերը, մանաւանդ՝ եթէ անոնք սպաննուած էին եղբայրական ձեռքերով: Անոնք թարմ կը մնային մեր յիշողութեան մէջ: Հազիւ լեռ մը կ'անցնէինք եւ կը մոռնայինք այն բոլորը՝ որ ցաւալի բաներ կը յիշեցնէին՝ ուրիշ մը կը ցցուէր. ամէն կողմ գերեզման:*

*Եւ, հօրեղբօրս վրէժը չէր լուծուած:*

*Հօրեղբայր Միրքօ երբեք բախտ չէր ունեցած. դժբախտութիւնները անբուժելի էին, քանի որ արու ժառանգորդ չունէր: Տասը տարի հօրմէս մեծ, ջերմօրէն կը սիրէր իր փոքր եղբայրը: Միրքօ ամուսնացած աղջիկներ ունէր, որոնց չէր կրնար հանդուրժել, հաւանաբար անոր համար՝ որ մանչ չունէր: Երբեք չէր աշխատեր, նեղուած՝ իր հիւանդ ձեռքին պատճառով: Հայրս անոր կ'օգնէր: Միրքօյի կալուածները լքուած էին: Փափաք չունէր զանոնք մշակելու: Որո՞ւ եւ ի՞նչ բանի համար պիտի ընէր այդ: Իր ճակատագիրը զինքը մենութեան կը դատապարտէր Մոնթենեկրոյի իր ընկերներուն մէջ, կարծես անիծուած ըլլար:*

*ՄԻԼՈՎԱՆ ՃԻԼԱՍ*

(5 Շար.)

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՄԷԶՈՆ – ԱԼՖՈՐԻ ՔԱՂԱՔԱ ՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԸ
28 ՄԱՐՏ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 8·30ԻՆ
*ՆԱԽԱԶԵՌՆՈՒԹԵԱՄԲ*
ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ
եւ հովանաւորութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան
ի նպաստ Ալֆորվիլի եկեղեցւոյն կից Ազգային Տան
*կը ներկայացուի*

## ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

*կատակերգութիւն երեք արար*

*Կը մասնակցին.— Արթին աղա՝* Պ. ՅԱԿՈԲ ՈՒՐԲԱԹԵԱՆ, *Եւփիմէ* Օր. ՎԵՐՈՆԻՔ ՄԱՆՈՒԿԵԱՆ, *Ռոզ՝* Օր. Մ. ՆԱՀԱՊԵՏԵԱՆ, *Տօքթ. Շաւարշ.* Պ. ՏԱՐՕՆ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ, *Ազրիպաս՝* Պ. ՅԱԿՈԲ ՅԱԿՈԲԵԱՆ, *Գաանիկ աղա՝* Պ. ՊԵՐՃ ՓԱՓԱԶԵԱՆ, *Տիրան՝* Պ. ԲԱԲԳԷՆ ՄՈՒԹԱՖԵԱՆ, *Լեւոն՝* Պ. ՍԵԴՐԱԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ, *Վահան՝* Պ. ԱԼԵՔՍ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ, *Ռոստոմ՝* Պ. ԳՐԻԳՈՐ ՋՈՐԹԵԱՆ, *Նիկողոս Աղա՝* Պ. ՎՐԷԺ ՆԵՏԻԼԵԱՆ *Ոստիկանապետ՝* Պ. ՅԱԿՈԲ ՏԷՐ ԳԷՈՐԳԵԱՆ, *Սիսակ՝* Պ. ԳՐԻԳՈՐ ՊԱՐՍՈՒՄԵԱՆ :

ՄՈՒՏՔ 300 ԵՒ 500 ՖՐԱՆՔ

*ԿՈՉ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԳԱՂՈՒԹԻՆ*

*Սիրելի հայրենակիցներ,*

*Ալֆորվիլի խումբ մը սրտցաւ երիտասարդներ, թեւ ու թիկունք դարձած են տեղւոյս եկեղեցւոյ Հոգաբարձութեան, տարիներէ ի վեր, Ազգային Տուն մը կառուցանելու ծրագրին :*

*Այժմէական ու անյետաձգելի պահանջ մըն է որ ալ աւելի զգալ կը դառնայ օրէ օր :*

*Կը վստահեցնենք ձեզ թէ նպատակին իրականացումը պիտի նպաստէ գաղութիս ներկայ եւ ապագայ սերունդներու ազգային ոգիին պահպանման :*

*Սիրելի Հայրենակիցներ, այսօր դարձեալ, Հոգաբարձութեան եւ այս երիտասարդութեան համերաշխ գործակցութեամբ, կազմակերպուած է թատերական ներկայացում մը :*

*Վստահ ենք որ նկատի կ'ունենաք սոյն ձեռնարկին կարեւորութիւնը :*

*Ձեր ներկայութեամբ ցոյց պիտի տաք ձեր ջերմ վերաբերմունքն ու անվերապահ գնահատանքը այս վեհ գործին իրագործման թափուած ջանքերուն համար :*

*Մեր կողմէ անսպառ եռանդ ու զոհաբերութիւն: Իսկ Ձեր պարտականութիւնն է, սիրելի հայրենակիցներ, քաջալերել մեզ :*

Ա. Հ. Ե.



### ՆՈՒԷՐՆԵՐ

*Տիկին Ազնիւ Գազազեան եւ զաւակները՝ Հրանոյշ եւ Արաքսի՝ իրենց ամուսնոյն եւ հօր ողբացեալ Գէորգ Գազազեանի մահուան քառասունքին առթիւ հինգ հազար ֆրանք կը նուիրեն Ֆ. Կապ. Խաչին եւ երեք հազար ֆրանք Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Հայաստան թերթին :*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Ժամագործեան եւ զաւակունք ինչպէս նաեւ ընտանիքը շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք մասնակցեցան իրենց սուգին՝*

*ՄԱՆՈՒԷԼ ԺԱՄԱԳՈՐԾԵԱՆԻ*

*մահուան առթիւ :*



## ԵՂԱՆԱԿԻ ԱՄԵՆԱՇՔԵՂ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

կազմակերպուած
ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԾՆՈՂՔՆԵՐՈՒ եւ ՄՈՒՐԱՏ – ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԵԱՆՑ ՄԻԱՑԵԱԼ ՈՒԺԵՐՈՎ :
*ԿԻՐԱԿԻ*, 7 *ՅՈՒՆԻՍ*
ՊԱՐԱՆՑԻԿ ԺԱՄԵՐ, ԺԱՄԸ 22էն ԵՏՔ
Վարժարանի դալարազեղ պարտէզներուն մէջ :

ՄՈՍԿՈՒԱՅԻ շրջանի բանուորներու և րեսփոխանները ընտրած են նոր նախագահ մը Բոնսթոփ, մայրաքաղաքի խորհուրդի նախկին նախագահ Նիքոլա Իսնաթովի տեղ: Այս փոփոխութեան մասին ոչ մէկ բացատրութիւն տրուած է:

ՅՈՎՀ. ԻԳ. քահանայապետը կիրակի օր ճառ մը խօսեցաւ որ կրնայ մեծ արձագանգ գտնել: Պապը ակնարկութիւններ ըրաւ Տիեզերական Ժողովին որուն գումարումը ինք որոշած էր: Պապին յատկանշական յայտարարութիւնը սակայն ան է.— Տիեզերական Կաթողիկէ Եկեղեցին միակն է զոր Աստուած ստեղծած է: Այս ձեւով Յովհաննէս ԻԳ. Աստուածային կամքէն զուրս կը նկատէ ուղղափառ, յունադաւան, անկլիքան եկեղեցիները: Որ եւ է եզրակացութենէ առաջ կրօնական եւ քաղաքական շրջանակները կը սպասեն չհաւատաղուած եկեղեցիներուն մեկնութեանց:

---

Տէր եւ Տիկին Գրիգոր Ալէաթճեան, Տէր եւ Տիկին Պերճ Սամիկեան եւ զաւակները (Պէյրութ), Օր. Լիտի Զաֆճեան, ինչպէս նաեւ Գամպէրեան, Փափազեան, Սարգիսեան, Կիմիւշճեան եւ Եաղըճեան ընտանիքները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, մօրաքրոջ եւ ազգականին՝

**ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԱՐԱՔՍԻ ՍԱՄԻԿԵԱՆԻ**
(Ծնեալ Գամպէրեան)

մահը, որ տեղի ունեցաւ Մարտ 13ին, 85 տարեկանին, յետ երկարատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երեքշաբթի (Մարտ 17) կէսօրէ ետք ժամը 16ին Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Մասնաւոր մահազդ ղկրուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

---

Տիկին Զապէլ Պէյլէրեան եւ Օր. Օտէթ Պէյլէրեան խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն եւ հօր՝

**ՓԱՌՆԱԿ ՊԷՅԼԷՐԵԱՆԻ**

մահը որ տեղի ունեցաւ Լիոնի մէջ Մարտ մէկին, յետ երկարատեւ հիւանդութեան: Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ ընտանեկան մտերիմ շրջանակի մէջ:

9, RUE CONSTANTINE, LYON

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն յանձնախումբը խորին շնորհակալութեամբ ստացաւ Մոնթէ Գառլոյի ազգայիններէն Պ. Մուշեղ Ճիւլէրճեանէ մէկ միլիոն ֆրանք ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան: Հանգուցեալ Կիւլպապի Կիւլպէնկեանի հոգւոյն ի յիշատակ հազար տոլար Անգլիայէն ղրկուած:

Ամերիկայէն Պ. Հէրի Պըրթէ 64.000 ֆրանք:

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Պ. Օննիկ Եղիայեանէ երեք հազար ֆրանք, իր մօրը հանգուցեալ Շնորհիկ Եղիայեանի մահուան առթիւ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.—

Տիկին Խաչիկ Կարապետեան (Պրիւսէլ) իր ամուսնոյն մահուան առթիւ հինգ հազար ֆրանք: Պ. Ստեփան Տամլամեան երեք հազար, Տօքթ. Վաղարշակ Պօղոսեանի մահուան առթիւ. նոյն առթիւ Տէր եւ Տիկին Տօքթ. Ա. Պօղոսեան երկու հազար ֆրանք: Ոմն Տիկին Մուրատի յիշատակին երկու հազար ֆրանք: Տիկին Արութեան, Մարսէյլ երկու հազար ֆր.:

Դպրոցասէրի Սանուց Միութիւնը, Նիւ Եորք, 410 տոլար Տիկին Մուրատ Պօյաճեանի յիշատակին:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի ժամը 9ին: Քաֆէ Բատէի սրահը: Պիտի խօսի Պ. Վ. ՄԵԼԻՔԵԱՆ: Նիւթ ունենալով՝ Օրմանեան եւ իր պատրիարքական շրջանի քաղաքականութիւնը:

Մուտքը ազատ է:

Imprimerie Spéciale
du Journal " Haratch "

---



---

ԿՐԸՆՈՊԼԸ.— Մոնդրէալէն (Քանատա) ընկերուհի Սրբուհի Արապեան իր ամուսնոյն ընկեր Յով. Արապեանի մահուան առաջին տարելիցին առթիւ ըրած է հետեւեալ նուէրները՝

Կրընոպլի Կապ. Խաչին, Հ. Յ. Դ. ենթակոմիտէին եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդին հինգական քանատական տոլար:

Յիշեալ կազմակերպութիւնները շնորհակալութեամբ եւ յուզումով ստացած են իրենց ընկերոջ յիշատակը յարգելու համար եղած սոյն նուէրը:

### ՎԱԼԱՆՍԻ ՀԱՅԵՐՈՒՆ
ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Պ. Էղսուզեան կը յայտարարէ թէ վերաբացուած է իր նպարավաճառատունը՝

10, RUE DES QUATORZE CANTONS

ուր պիտի գտնէք թարմ պտուղներ եւ ամէն տեսակ բանջարեղէն մատչելի գինով:

Յաճախորդները պիտի գտնեն նաեւ քաշուած մաքուր սուրճ:

Այցելութիւն մը բաւական է՝ համոզուելու համար:

ՊԱՏՄԱԳԷՏ ԵՒ ՀՆԱԳԷՏ
ՈՂԲ. ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆԻ

Յիշատակին յարգանքի երեկոյթ մը կազմակերպուած է:

21 Մարտ, Շաբաթ երեկոյեան, ժամը 21ին, Սալ տէ Սանթրօ, Փարիզ:

Հովանաւորութեամբ Գերաշնորհ Սերովբէ եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ:

Խօսք պիտի առնեն ծանօթ հնագէտ Փրոֆ. Քավէնեաք եւ ուրիշներ

Գեղարուեստական ճոխ բաժին:

Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն յարգել իր յիշատակը եւ ներկայ ըլլալու իբր հրաւէր:

Մուտքը ազատ է:

### ԶԱՏԻԿ

Փարիզի Հայոց Եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը հրաւիրէ հայ հասարակութիւնը ներկայ գտնուիլ հետեւեալ արարողութիւններուն:

Մարտ 20, Ուրբաթ առաւօտ վերջին Աւետարան ժամը 9ին, երեկոյեան ժամը 4.30ին «Խաչապաշտ եւ Թաղում»:

Մարտ 22, Կիրակի Ծաղկազարդ, սկիզբ ժամերգութեան ժամը ութին, հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ ժամը 10ին, երեկոյեան «Դռնբացէք» ժամը 4.30ին:

Մարտ 26: Աւագ Հինգշաբթի, առաւօտեան պատարագ ժամը 10ին: Կարգ Ոտնլուայի, երեկոյեան ժամը չորսին, կարգ Խաւարման ժամը ութին:

Մարտ 27, Աւագ Ուրբաթ, Թաղման Թափօր, երեկոյեան ժամը 5ին:

---

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ - ՀԱՒԿԹԱԽԱՂ
ԶԱՏԿՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպութեամբ Հ.. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի: 28 Մարտ, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս Պոմոնի Ազգային սրահին մէջ: Ճոխ յայտագիր: Մանրամասնութիւնները յաջորդով:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ծանօթ հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէն: Կը խնդրուի ներկայանալ անդամատետրով: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ընկերական ժողովը այս Ուրբաթ, ժամը 21ին, Ռեժանի վերնայարկը: Պարտաւորիչ ներկայութիւն:

### ԵՂԱՆԱԿԻ ԱՄԵՆԱՇՔԵՂ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

Կազմակերպուած

ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԾՆՈՂՔՆԵՐՈՒ եւ ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԵԱՆՑ ՄԻԱՑԵԱԼ ՈՒԺԵՐՈՎ:

ԿԻՐԱԿԻ, 7 ՅՈՒՆԻՍ

ՊԱՐԱՆՑԻԿ ԺԱՄԵՐ, ԺԱՄԸ 22էն ԵՏՔ

վարժարանի դալարազեղ պարտէզներուն մէջ:

---

Խրուշչեւ մեղմ թոնով խօսած է եւ բոլոր հարցումներուն պատասխանած է հան – դարտ կերպով: Այս է պատճառը, որ Արտաքին նախարարներու ժողովի մը գումարումը կասկածէ դուրս կը համար – ուի: Ոչ մէկ անպատեհութիւն կայ՝ որ թուականն ու վայրը փոփոխութեան են – թարկուին, Արեւմուտքի թէ Խ. Միու – թեան կողմէ :

Մոսկուայի գլխաւոր մտահոգութիւնը միշտ կը մնայ անչուշտ գերմանական հարցը: Միացեալ Նահանգները, Անգ – լիա, Ֆրանսա եւ Խ. Միութիւնը, Գեր – մանիոյ գրաւումէն ետք իրաւունք ունէին իրենց բանակները պահելու այնտեղ: Բայց 14 տարի անցած է Գերմանիոյ գրա – ւումէն ի վեր եւ այլեւս կարելի է խաղա – ղութեան դաշինք մը կնքել երկու Գեր – մանիաներու հետ, — կ'ըսէ Վարչապետ Խրուշչեւ: Այդ պարագային՝ յաղթական չորս երկիրները բնականաբար պիտի կորսնցնեն 1945ի իրենց իրաւունքները եւ օտար ուժերը պիտի հեռանան Գերմա – նիայէն :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՎՐԻՊԱԿ

«Յառաջ»ի երէկուան թիւը (նոր շրջա – նը) պիտի ըլլայ 4250 (տպուած է 4230):

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԱՒԱԳ ՇԱԲԹՈՒԱՆ ԵՒ Ս. ԶԱՏԿԻ

22 Մարտ, Կիրակի Ծաղկազարդ, Ս. պատարագ, բազմաձայն երկսեռ խումբով ժամը 10ին.— Երեկոյ Դռնբացէք ժամը հինգին :

24 Մարտ, Աւագ Երեքշաբթի Յիշա – տակ Տասն Կուսանաց, երեկոյեան ժամեր – գութիւն ժամը հինգին :

(Շար.)

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

20, Րիւ Ժամափս

Պաշտամունք՝ այս Կիրակի ժամը 10.45– ին հրապարակային ժողով ժամը 17ին : Կը խօսի՝ Տոքթ. Ժիլպէռ Պիլէզիքեան : Նիւթ՝ «Ինչպէս ապատուիլ մեր կիրքե – րէն» :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ձեռնարկուներ հիւսուածեղէնի մոնթա – ժի համար (մոնթաժ տը թրիգօ):

TERZIAN

3, RUE POISSONNIÈRE, PARIS

Imprimerie Spéciale
du Journal "Haratch"



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Սօթնեղբայր – եան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ :

Ֆ. Կ. ԽԱՉԻ Կեդր. վարչութիւնը միջ – մասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փա – րիզի շրջանի տասը մասնաճիւղերու ըն – կերուհիները, այս երեքշաբթի ժամը ճիշդ 16ին Ռեժանի վերնայարկը, մեթրօ Քատէ: Կարեւոր օրակարգ :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎ ԻՍԻԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ջա – ւարեան կոմիտէին, այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան դպրոցը:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՊԱՏՄԱԳԷՏ ԵՒ ՀՆԱԳԷՏ ՈՂԲ. ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆԻ

Յիշատակին յարգանքի երեկոյթ մը կազմակերպուած է :

21 Մարտ, Շաբաթ երեկոյեան, ժամը 21ին, Ծալ տէ Սանթրօ, Փարիզ :

8, Rue Jeau Goujon

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Լաւ կարող (քուփէօզ) մասնագէտ քըր – սաժի: Տեւական գործ, ամբողջ տարին, լաւ վճարում : Դիմել՝

**Francine**

38, RUE D'ABOUKIR, PARIS 2e 3e ÉTAGE





### ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած

Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան կողմէ 22 Մարտ, Կիրակի ժամը 16էն մինչեւ 24,

CERCLE MILITAIREի

ընդարձակ սրահը (Փլաս Սէնթ Օկիւսթէն)

Գեղարուեստական ճոխ բաժին, անակնկալներ

Նուագախումբ՝ ՎԱՐԴԻՎԱՆԵԱՆԻ

Տոմսերու եւ սեղաններու համար դիմել՝

Յ. Պահատուրեան Tél. : ORN. 37-22

Գ. Աղամեան « : TRI. 57-74

### ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱՆԳԱՅԻՆ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

## ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

22 Մարտ, Կիրակի կէս օրէ յետոյ ժամը 3.30էն մինչեւ կէս գիշեր Իսիի քաղաքապետական մեծ սրահին մէջ:

Métro : Mairie d'Issy

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

# ՊԱՅԾԱՌԻԿ ՓԱՌԱՏՕՆ

**ԼԻՈՆ - ՇԱԲԱԹ 28 ՄԱՐՏ**
(Պուրս տիւ Թրավայ)
ԺԱՄԸ ՃԻՇԴ 20,30ԻՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ԿԵՆԴԱՆԻ ՊԱՏԿԵՐ ՄԸ՝

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ՝ ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼԱՒԱԳՈՅՆ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ

ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

**ՄԱՐՍԷՅԼ - ԿԻՐԱԿԻ 29 ՄԱՐՏ**
(Քազա տ'Իթալիա)
ԺԱՄԸ ՃԻՇԴ 20,30ԻՆ

ՄՇՈՅ ՍՈՒԼԹԱՆ ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ ՎԱՆՔԸ

**ԱՄԷՆ ՀԱՅՈՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԻՒՆՆ Է ՔԱՋԱԼԵՐԵԼ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԱՅՍ ՁԵՌՆԱՐԿԸ**

Տիկին Զապէլ Պէյլէրեան, Օր. Օռէթ Պէյլէրեան, ինչպէս նաեւ բոլոր ընտանիքը խորին կսկիծով կը ծանուցանեն մահը Պ. Փառնակ Պէյլէրեանի, իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին որ տեղի ունեցաւ մարտ մէկին :

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ մարտ չորսին, Սէն Վէնսան եկեղեցւոյ մէջ, ի ներկայութեան ազգականներու եւ բարեկամներու, մարմինը ամփոփուեցաւ Կիյոթիէրի գերեզմանատունը, ընտանեկան դամբարանին մէջ :

Այս տխուր առթիւ իր այրին եւ զաւակը խորին շնորհակալութիւններ կը յայտնեն ամէն անոնց՝ որոնք անձամբ, հեռագիրով եւ նամակով մասնակցեցան իրենց խոր սուգին :

### ՆՈՒԷՐՆԵՐ

Օր. Արուսեակ Սահաթճեանի մահուան առթիւ, հանգուցեալին վշտահար եղբայրն ու քոյրը Նորայր և Պէաթրիս Սահաթճեան, իրենց խոր կսկիծը բարեգործութեամբ նուիրագործելու ազնիւ մտածումով, իրենց տարաբախտ քրոջ անմոռաց յիշատակին կ'ընեն հետեւեալ նուէրները.— Բարեգործականի Մարսէյլի Հայուհեաց մասնախումբին, որուն կ'անդամակցէր օրհնեալը, յիսուն հազար ֆրանք, Ս. Սահակ Մեսրոպ եկեղեցւոյ պայծառութեան 25.000, Մարսէյլի Ց. Կապոյտ Խաչի մասնաճիւղին 25.000, Մարսէյլի Աղքատախնամին 25.000 ֆր. :

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ - ՀԱՒԿԹԱԽԱՂ

ՁԱՏԿՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպութեամբ Հ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի : 28 Մարտ, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս Պոմոնի Ազգային սրահին մէջ: Ճոխ յայտագիր : Մանրամասնութիւնները յաջորդով :

### ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Ապրիլ 2էն 16 :

**Galerie Cambacerès**

15, RUE LA BOÉTIE

ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ՆԿԱՐՉՈՒՀԻ

**ԱՐԱՔՍ ՏԷՐՈՍԿԻԻ**

Վերջին գործերը :

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ

Փարիզի մէջ, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի :

ՄԱՅԻՍ 16ԻՆ

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Յ. Կ. ԽԱՉԻ Կեդր. վարչութիւնը միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերու ընկերուհիները, այս երեքշաբթի ժամը ճիշդ 16ին Ռեժանի վերնայարկը, մեթրօ Քատէ : Կարեւոր օրակարգ :

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

THÉATRE MUNICIPAL DE VILLEURBANNE

Կազմակերպուած

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ**

Ուրբաթ, Ապրիլ 3, ժամը 20·30ին

Կը ներկայացուին

1.— ԱԴՈՒԱՐԴ ԻՇԽԱՆ (Տռամ Հայ – Մակեդոնական շրջանէն)

2.— L'article 330, G. Courteline (Comédie en un acte)

3.— ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ (Կատակերգութիւն)

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նոյն ներկայացումը կիրակի (Ապրիլ 5) ժամը 15·30ին,

THEATRE MUNICIPAL DE VIENNE

### ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ 44ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Պիտի տօնուի մեծ շուքով, նախագահութեամբ շատ կարեւոր անձնաւորութեանց, Սէրքըլ Միլիթէրի մէջ, կիր., 5 Ապրիլ, ժամը 15 – 24, Զինուորական փանֆառ, նոր ֆիլմ, ֆոլքլորիք պարեր : ու անոր բոլորովին նոր անակնկալներով: Կոնկոնի արտասովոր նուագախումբով Վերապահեցէք Ապրիլ 5ի կիրակին :

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԱՒԱԳ ՇԱԲԹՈՒԱՆ ԵՒ Ս. ԶԱՏԿԻ

24 Մարտ, Աւագ Երեքշաբթի Յիշատակ Տասն Կուսանաց, երեկոյեան ժամերգութիւն ժամը հինգին :

(Շար.)

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Լաւ կարող (fuփէօզ) մասնագէտ fորսաժի: Տեւական գործ, ամբողջ տարին, լաւ վճարում : Դիմել՝

**Francine**

38, RUE D'ABOUKIR, PARIS 2e 3e ÉTAGE

Imprimerie Spéciale du Journal " Haratch "

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՄԷԶՕՆ – ԱԼՖՈՐԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԸ

28 ՄԱՐՏ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 8·30ԻՆ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ

Եւ հովանաւորութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան ի նպաստ Ալֆորվիլի եկեղեցւոյն կից Ազգային Տան

Կը ներկայացուի

**ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ**

Կատակերգութիւն երեք արար

Կը մասնակցին.— Արթին աղա՝ Պ. ՅԱԿՈԲ ՈՒՐԲԱԹԵԱՆ, Եփիմէ Օր. ՎԵՐՈՆԻՔ ՄԱՆՈՒԿԵԱՆ, Ռոզ՝ Օր. Մ. ՆԱՀԱՊԵՏԵԱՆ, Տօքթ. Շաւարշ. Պ. ՏԱՐՕՆ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ, Ապրիկաս՝ Պ. ՅԱԿՈԲ ՅԱԿՈԲԵԱՆ, Գառնիկ աղա՝ Պ. ՊԵՐՃ ՓԱՓԱԶԵԱՆ, Տիրան՝ Պ. ԲԱԲԳԷՆ ՄՈՒԹԱՖԵԱՆ, Լեւոն՝ Պ. ՍԵԴՐԱԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ, Վահան՝ Պ. ԱԼԵՔՍ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ, Ռոստոմ՝ Պ. ԳՐԻԳՈՐ ՉՈՐԹԵԱՆ, Նիկողոս Աղա՝ Պ. ՎՐԷԺ ՆԵՏԻԼԵԱՆ Ոստիկանապետ՝ Պ. ՅԱԿՈԲ ՏԷՐ ԳԷՈՐԳԵԱՆ, Միսաք՝ Պ. ԳՐԻԳՈՐ ՊԱՐՍՈՒՄԵԱՆ :

ՄՈՒՏՔ 300 ԵՒ 500 ՖՐԱՆՔ

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ընկեր Միհրան Գավչեան 6000 Ֆր.։
Քանի մը ընկերներ (Փարիզէն) 13.000 ֆրանք ։

Տէր եւ Տիկին Պօյաճեան Մարտիրոս եւ զաւակները իրենց ողբացեալ կնքահօր Գրիգոր Մանուկեանի կսկծալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն հինգ հազար ֆրանք ։

Նոյն առիթով Տէր եւ Տիկին Մարուքէ Պօյաճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արամ Աչըգկէօզեան եւ Պ. Ժիրայր Վարպետեան երկու հազարական ֆրանք, Պ. Յակոբ Յարութիւնեան հազար ֆրանք ։

Կրընոպլէն Տիկին Վ. Օնպաշեան Ս. Յարութեան տօնին առթիւ Հ. Ց. Դ. Նոր Սերունդի Յարութիւն Օնպաշեան սրահին կը նուիրէ հարիւր հազար ֆրանք ։

Հ. Ց. Դ. Նոր Սերունդի Կրընոպլի մասնաճիւղը իր պարահանդէսին հասոյթը՝ երեսուն հազար ֆրանք կը նուիրէ Հայ Մշակոյթի տան ։

Օր. Սրբուհի Պիւլպիւլեան, Այրի Տիկ. Պերճուհի Նշանեան եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Արշաւիր Գաբրիէլեան եւ զաւակները, Օր. Իրիս Պիւլպիւլեան, Այրի Տիկին Ե. Յովսէփեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գ. Գասպարեան եւ զաւակները (Պոլիս), ինչպէս նաեւ Փափազեան եւ Իսկէնտէրեան ընտանիքները եւ ընտանեկան բոլոր պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ-մօր եւ ազգականին

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՏԻՐՈՒՀԻ ՊԻՒԼՊԻՒԼԵԱՆԻ
(Ծնեալ Գասպարեան)

մահը, որ տեղի ունեցաւ Մարտ 24ին ։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Ուրբաթ առաւօտ ժամը 10.30ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ ։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել ։

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները Գաբրիէլեան եւ Պիւլպիւլեան ընտանիքներուն ։

Տէր եւ Տիկին Մինաս Խաչիկեան եւ զաւակը, Պ. Խաչիկ Խաչիկեան, Տէր եւ Տիկին Պօղոս Տէլալեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ժիլպեռ եւ Սրբուհի Ֆօթիլլօն եւ զաւակը, Տէր եւ Տիկին Նիկողոս Խաչիկեան, Տէր եւ Տիկին Խաչիկ Խաչիկեան, Պ. Յաբէթ Թէրզեան եւ զաւակները, Այրի Տիկին Մարիամ Անանեան, Տէր եւ Տիկին Անանիա Անանեան եւ զաւակները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց հօր, մեծ հօր, սանին եւ ազգականին՝

ՄԿՐՏԻՉ ԽԱՉԻԿԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Փիթիէի հիւանդանոցին մէջ։

Յուղարկաւորութիւնը՝ այսօր Հինգշաբթի Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցիին մէջ, ժամը 16ին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը ։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել ։

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

THÉATRE MUNICIPAL DE VILLEURBANNE

Կազմակերպուած

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

Ուրբաթ, Ապրիլ 3, ժամը 20.30ին

Կը ներկայացուին

1.— ԱԴՈՒԱՐԴ ԻՇԽԱՆ
(Տռամ Հայ - Մակեդոնական շրջանէն)

2.— L'article 330, G. Courteline
(Comédie en un acte)

3.— ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ
(Կատակերգութիւն)

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նոյն ներկայացումը Կիրակի (Ապրիլ 5) ժամը 15.30ին,

THEATRE MUNICIPAL DE VIENNE

Imprimerie Spéciale
du Journal " Haratch "

## Հ. Ց. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ԲԱՑԱՌԻԿ ՓԱՌԱՏՕՆ

ԼԻՈՆ - ՇԱԲԱԹ 28 ՄԱՐՏ
(Պուրս տիւ Թրավայ)
ԺԱՄԸ ՃԻՇԴ 20,30ԻՆ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ՝ ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼԱՒԱԳՈՅՆ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ

ՄԱՐՍԷՅԼ - ԿԻՐԱԿԻ 29 ՄԱՐՏ
(Քազա տ'Իթալիա)
ԺԱՄԸ ՃԻՇԴ 20,30ԻՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ԿԵՆԴԱՆԻ ՊԱՏԿԵՐ ՄԸ՝ ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ՄՇՈՅ ՍՈՒԼԹԱՆ ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ ՎԱՆՔԸ

ԾԱՆՕԹ.— Ժամադրութիւն Շաբաթ առաւօտ ժամը 8.30ին, Կառ տը Լիոն, Սալ տը լ'Օրլօժ ։

**ԱՄԷՆ ՀԱՅՈՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԻՒՆՆ Է ՔԱՋԱԼԵՐԵԼ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԱՅՍ ՁԵՌՆԱՐԿԸ**

### ՁԱՅՆԱՍՓԻՒՌԸ ԵՒ ՀԵՌԱՏԵՍԻԼԸ

Մարսէյլի ձայնասփիւռի եւ հեռատեսիլի յայտագրին մէջ պիտի խօսուի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի փառատօնին մասին՝ հետեւեալ օրերուն եւ ժամերուն .—

ՁԱՅՆԱՍՓԻՒՌ.— Փրովանս - Մակազին (Մարսէյլ) բաժնին մէջ, այս ուրբաթ, ժամը 12 - 12.30ին ։

ՀԵՌԱՏԵՍԻԼ.— Փրովանս - Մակազին (Մարսէյլ) բաժնին մէջ, այս չորսաթ ժամը 13.30 - 14.30 ։

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ - ՀԱՒԿԹԱԽԱՂ

ՁԱՏԿՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպութեամբ Հ. . Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի ։ 28 Մարտ, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս Պոմոնի Ազգային սրահին մէջ։ Ճոխ յայտագիր ։ Մանրամասնութիւնները յաջորդով ։

### ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.Ի

ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ՁԱՏԻԿԻՆ

(29 Մարտ) Ալհամպրայի մէջ ։
ժամը 21էն մինչեւ լոյս

**Orchestre
Jo valon et Gu Berthos**

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Աւետիս, Սուրէն եւ Միսաք Գալֆայեան եղբայրներ խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որոնք իրենց ներկայութեամբ, ծաղկեպսակներով եւ ցաւակցութիւններով մխիթարեցին զիրենք, իրենց սիրեցեալ մօր Այրի Տիկին Մաքրուհի Ա. Գալֆաեանի ցաւալի մահուան տխուր առթիւ։

×

Այրի Տիկին Ա. Աբրահամեան եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէին Հայ Մարզական Միութեան եւ բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով եւ նուիրատուութեամբ ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ ազգականին՝

ԱՀԱՐՈՆ ԱԲՐԱՀԱՄԵԱՆԻ

մահուան առթիւ։

### ՆՈՒԷՐ

Սէն Ժերմէի Թաղ. Խորհուրդը, խորին շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Կղեմէս Խոչեանէ, իրենց որդւոյն Վարդգէսի զինուորական ծառայութենէ ողջ եւ առողջ վերադարձին առթիւ հետեւեալ նուէրները .— Թաղիս երկրատան շինութեան ֆոնտին երկու հազար ֆրանք, իսկ եկեղեցւոյս պայծառութեան համար հազար ֆրանք ։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Շաւիլէն Պ. Մովսէս Տէմիրճեան եւ Օր. Զարուհի Տէմիրճեան կը ծանուցանեն թէ այս երկուշաբթի (Մեռելոց) Շաւիլի եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի իրենց կնոջ եւ մօր ողբ.

ՆՈՒՐՀԱՆԻ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ։ Կը խնդրուի իր յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ սոյն արարողութեան ։

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Գործաւորներ ձեւընկալ նիւթերու (մաթիէռ փլասթիք) մեքենայի վրայ աշխատելու համար։ Դիմել՝



### Ս. ՊՕՂՈՍ - ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑԻ

Աւագ շաբթուան բոլոր արարողութիւնները կը կատարուին ըստ աւանդութեան ։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը, այս Հինգշաբթի, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին ։

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՄԷԶՕՆ - ԱԼՖՈՐԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԸ
28 ՄԱՐՏ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 8.30ԻՆ
ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ
ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ
Եւ հովանաւորութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան
ի նպաստ Ալֆորվիլի եկեղեցւոյն կից Ազգային Տան
Կը ներկայացուի

**ՃԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ**

Կատակերգութիւն երեք արար
ՄՈՒՏՔ 300 ԵՒ 500 ՖՐԱՆՔ

Մեծերու ժողով։— Նախագահ Այզընհաուըրի յայտարարութիւններուն համաձայն գտնուելով՝ Ջօր․ Տը Կոլ աւելցուց թէ ինք անձամբ պիտի մասնակցի Մեծերու ժողովին ։

Հանրապետութեան Նախագահը վճռական էր իր յայտարարութիւններուն մէջ եւ իր մամուլի ասուլիսով եկաւ անգամ մը եւս շեշտել, թէ Արեւմուտքը տեղի պիտի չտայ եւ իր իրաւունքներէն պիտի չհրաժարի ։

———o———

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ պաշտօնէ արձակուեցաւ կոմսոմոլներու Կ․Կոմիտէին առաջին քարտուղարը՝ Վլատիմիր Սէմիչասթնի որուն աւելի բարձր պաշտօններ պիտի տրուին։ Երիտասարդ համայնավար կուսակցութեան նոր պարագլուխն է՝ Սերժ Փավլով, իսկ Սէմիչասթնի անցեալ Հոկտեմբերին յայտարարած էր թէ «վիրաւորանք է նոյնիսկ խոզի մը համար՝ գայն Փասթերնաքի նմանցնել ․․․»։

ԹԻՊԷԹ գրկուած չինական ուժերը բարձրացած են լիտուն հազարի ։ Դիմադրութիւնը ճզմուած է Լասայի մէջ, բայց ապստամբական շարժումը տարածուած է երկրին մէկ ծայրէն միւսը ։ Տալայ – Լամայի ճակատագիրը յայտնի չէ տակաւին․ ոչ ոք գիտէ՝ թէ ուր կը գտնուի ան ։

ՄՈՍԿՈՒԱՅԻ արեւմտեան դեսպանները Կրեմլինի իշխանութեանց յանձնեցին խորհրդային վերջին յուշագրին պատասխանը ։

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ վարչապետը եւ արտաքին նախարարը Անգարա հրաւիրուեցան ։ Այս պաշտօնական այցելութեամբ երկու երկիրները կ'ուզեն ողեկոչել Կիպրոսի հարցին լուծումը ։

ԻՐԱՔԻ գնդապետ մը Պաղտատի զինուորական ատեանին առջեւ յայտարարեց թէ « Քասըմ պետն է նաեւ Սուրիոյ » ։

Պ․ Նուպար Ալիքսանեան, Տիկին Ռուբինա Սթէյն – Ալիքսանեան եւ զաւակները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր եւ մեծ մօր՝

ՏԻԿԻՆ ՍԻՐԱՆՈՅՇ ԱԼԻՔՍԱՆԵԱՆԻ

մահը։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի Ուրբաթ (Մարտ 27) ժամը 13·30ին Ալֆորվիլի Ս․ Պ․ Պետրոս եկեղեցիին մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փէռ Լաշէզի գերեզմանատունը։

Կը խնդրուի ներկայս ընդունիլ իբրեւ մահազդ ։

Համաձայն հանգուցեալին փափաքին՝ ոչ ծաղիկ, ոչ ծաղկեպսակ ։



### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Շաւիլէն Պ․ Մովսէս Տէմիրճեան եւ Օր․ Զարուհի Տէմիրճեան կը ծանուցանեն թէ այս երկուշաբթի (Մեուտոն) Շաւիլի եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի իրենց կնոջ եւ մօր ողբ․

ՆՈՒՐՀԱՆԻ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ։ Կը խնդրուի իր յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ սոյն արարողութեան ։

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ - ՀԱՒԿԹԱԽԱՂ

ՋԱՏԿՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպութեամբ Հ․․ Դ․ «Զաւարեան» ենթակոմիտէի ։ 28 Մարտ, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս Պոմոնի Ազգային սրահին մէջ։ Ճոխ յայտագիր ։ Մանրամասնութիւնները յաջորդով ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Գրիգոր Ալէաթճեան, Օր․ Լիտի Զաֆճեան շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր եւ մեծ մօր ողբացեալ՝

ՏԻԿԻՆ ԱՐԱՔՍԻ ՍԱՄԻԿԵԱՆԻ

մահուան տխուր առթիւ ։

### ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Կոստանեան ողբացեալ Գրիգոր Մանուկեանի մահուան առթիւ հազարական ֆրանք կը նուիրեն Մշակոյթի Տան եւ «Յառաջ»ին։ (Մշակոյթի Տան գումարը ստանալ «Յառաջ»էն) ։

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ

20, RUE JEMMAPES
ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք այս Կիրակի ժամը 10·45ին։ Կը խօսի՝ ՎԵՐ․ Յ․ ՀԵԼՎԱՃԵԱՆ ։ Նիւթ՝ «Քրիստոսի Յարութեան բերած պարգեւները » ։

Imprimerie Spéciale
du Journal " Haratch "

### ԳԱՍՊԱՐ ԻՓԷԿԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ողբացեալ Գասպար Իփէկեանի մահուան եօթներորդ տարեդարձին առթիւ Տիկին Իփէկեան եւ զաւակները կը նուիրեն չորս հազար ֆրանք Մշակոյթի Տան։ (Ստանալ «Յառաջ»էն) ։

### ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ՋԱՏԻԿԻՆ

(29 Մարտ) Ալհամպրայի մէջ ։
ժամը 21էն մինչեւ լոյս

**Orchestre**
**Jo valon et Gu Berthos**

### ՁԱՅՆԱՍՓԻՒՌԸ ԵՒ ՀԵՌԱՏԵՍԻԼԸ

Մարսէյլի ձայնասփիւռի եւ հեռատեսիլի յայտագրին մէջ պիտի խօսուի Հ․ Յ․ Դ․ Նոր Սերունդի փառատօնին մասին՝ հետեւեալ օրերուն եւ ժամերուն ։—

ՁԱՅՆԱՍՓԻՒՌ ։— Փրովանս - Մակազին (Մարսէյլ) բաժնին մէջ, այս ուրբաթ, ժամը 12 – 12·30ին ։

ՀԵՌԱՏԵՍԻԼ ։— Փրովանս – Մակազին (Մարսէյլ) բաժնին մէջ, այս չորեքշաբթի ժամը 13·30 – 14·30 ։

### Ս․ ՊՕՂՈՍ – ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑԻ

Աւագ շաբթուան բոլոր արարողութիւնները կը կատարուին ըստ աւանդութեան ։

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՄԷԶՈՆ – ԱԼՖՈՐԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԸ
28 ՄԱՐՏ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 8·30ԻՆ
ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ
ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ
Եւ հովանաւորութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան
Ի նպաստ Ալֆորվիլի եկեղեցւոյն կից Ազգային Տան
կը ներկայացուի

**ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ**

կատակերգութիւն երեք արար
ՄՈՒՏՔ 300 ԵՒ 500 ՖՐԱՆՔ

### ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ 44ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ԿԻՐԱԿԻ, 5 ԱՊՐԻԼ, ԺԱՄԸ 15էն 24

CERCLE MILITAIRE — PLACE ST. AUGUSTIN

ՋԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՊԱՐԵՐ ՏԱՐԱԶՈՎ,
ԵՐԿՐԷՆ ՆՈՐ ՖԻԼՄ

Բ․ մաս ։— ժամը 18էն 24

**ՊԱՐԱՀԱՆԴԷՍ - ԽՐԱԽՃԱՆՔ**

GONGOND ՈՒԹ ՀՈԳԻՆՈՑ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ
**(Sous la direction de KASSAPIAN - Exculsivité «Reo Recording Artist»**
De retour du Canada se produit la première fois à Paris
**Formation Typique de Jazz Sud-Américain**
**TANGOS sous la direction du célèbre Jacques VALENTE**
AMBIANCE

ԱՊՐԻԼ 5ԻՆ ԲՈԼՈՐԴ՝ ՍԷՐՔԼԸ ՄԻԼԻԹԷՐ տօնելու համար Վասպուրականի յաղթանակը ։

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած ԹՈՔԱՏԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ
Եւ Ռոնի – Սու – Պուայի ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
Ի նպաստ ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ և ՎԵՑ ՔԱՀԱՆԱՆԵՐՈՒ ՇԻՐՄԻՆ ԿԱՌՈՒՑՄԱՆ

Հովանաւորութեամբ եւ նախագահութեամբ Կաթ․ Պատուիրակ
ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ․ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ — Կը խօսի Պ․ Յ․ ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆ

Շաբաթ, Ապրիլ 4, երեկոյեան ժամը 8·45ին, Փօլ Ֆարալիէի սրահին մէջ, 21 իվ – Թուտիէ, Փարիզ, մէթրօ՝ Ժաք Պոնսէրժան

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ Փարիզի երիտասարդ արուեստագէտներու։ Երգ, նուագ, պար գեղավարութեամբ
Տիկին ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ — Խօսնակ Ե․ ԳՐԻԳՈՐԵԱՆ
Կը ներկայացուի նաեւ Հայաստանէն նոր եկած ֆիլմ մը
ՄՕՐ ՄԸ ՍԻՐՏԸ — Մուտք 400 եւ 300 ֆրանք

Տոմսերը կը ծախուին Փարիզի եւ արուարձաններու հայկական եկեղեցիները եւ Սամուէլեան, Պարսամեան, Բալուեան գրատուները ։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Այրի Տիկին Տիրուհի Պիւլպիւլեանի մահուան առթիւ Տիկին Տիրուհի Միսաքեան երեք հազար ֆրանք կը նուիրէ Մըշակոյթի Տան Նոր Սերունդի սրահին :

(Ստանալ «Յառաջ»էն) :

×

ՍԷՆ ԺԷՐՈՄ — Թաղ. Խորհուրդս խորին շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները, ողբացեալ Պետրոս Սահաթճեանի եւ Յարութիւն Միհրանեանի մահուան առթիւ, ի նպաստ Թաղիս եկեղեցւոյ եւ դպրոցին :

Բիւզանդ Խաչատուրեան, Տօրումեան եղբարք, Յակոբ Տալաքիւփէեան, Զիլեան Մանուկ հազարական ֆր. ի նպաստ դպրոցին, Նազար Ժամկոչեան, Յովհաննէս Ժամկոչեան, Յովհ. Մանկեան, Պ. Հաթէմեան, Յովհ. Ժամկոչեան հինգ հարիւրական ֆր. դպրոցին :

## ՓԱՐԻԶ

Ապրիլ 5 Նոր Կիրակի, հանդիսաւոր քառաձայն, պատարագ, ի յիշատակ բիւրաւոր նահատակացն մերոց համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմաց. Կատարի հոգեհանգիստ յամենայն եկեղեցիս Հայաստանեայց յիշատակ մեռելոց : Կը նախագահէ Գեր. Տէր Սերովբէ եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ եւ կը քարոզէ :

×

Գոմսնի Ս. Գ. Լուսաւորիչ

Երկուշաբթի, Յիշատակ Մեռելոց, ըսկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8·30ին, հանդիսաւոր պատարագ, Հոգեհանգիստ ժամը տասնին :

5 Ապրիլ Կիրակի, Յիշատակ մէկ միլիոն նահատակաց, արարողութիւնք առաւօտեան ժամը 8·30ին, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասնին, հոգեհանգստեան տխուր պաշտօն ժամը 11·45ին :

×

### Ս. ԹԱԴէՈՍ – ՄԱՐՍէՅԼ

30 Մարտ, Երկուշաբթի Մեռելոց, առաւօտ ժամերգութիւն ժամը ութին, Ս. պատարագ ժամը տասնին, Հանդիսաւոր Հոգեհանգիստ ժամը 11ին :

5 Ապրիլ, Նոր Կիրակի, Տօն Նահատակաց համաշխարհային պատերազմին 1914–1918, առաւօտ ժամերգութիւն ժամը 8–ին, Ս. պատարագ տասնին, Հանդիսաւոր Հոգեհանգիստ ժամը 11ին :

Եկեղեցական արարողութիւնները տեղի կ՚ունենան երկսեռ երգչախումբի նոր ուժերով, ընկերակցութեամբ երգեհոնի, ղեկավարութեամբ Օր. Սիւզան Պօյաճեանի :

×

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Երկուշաբթի Մեռելոց Ս. Զատկի, առաւօտ Ս. պատարագ երկսեռ խումբով եւ հոգեհանգիստ ժամը 8 – 12 :

Նոր Կիրակի Ազգ. Մեծ Սգատօն, բազմաձայն խմբերգներով, յիշատակ բիւրաւոր նահատակացն մերոց, յընթացս Համաշխարհային պատերազմին :

Առաւօտ Ս. պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 8 – 11·30 :

×

### ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ

Երկուշաբթի, Մեռելոց, առաւօտ ժամը 8·30ին, Ս. պատարագ 10ին, հոգեհանգիստ ժամը 11ին :

Նոր Կիրակի, 5 Ապրիլ սկզբնաւորութիւն ժամերգութեանց առաւօտ ժամը 8·30ին :

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Ապրիլ 2էն 16 :

**Galerie Cambacerès**

15, RUE LA BOÉTIE

ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

ՆԿԱՐՉՈՒՀԻ

ԱՐԱՔՍ ՏԷՐՈՍԿԻԻ

Վերջին գործերը :

### ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՅ ՆԿԱՐԻՉՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնաժողովը նպատակ ունի յառաջիկային, իր սրահներուն մէջ կազմակերպել՝ Հայ նորահաս նկարիչները քաջալերելու համար, ցուցահանդէս մը իրենց գործերուն :

Կը խնդրենք որ մեր երիտասարդ արուեստագէտները դիմեն մեզի շուտափոյթ :

11, Square Alboni, Paris (16e)

Imprimerie Spéciale
du Journal " Haratch "



## ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ

### ԱՄՍՕՐԵԱՅ ԵՐԵԿՈՅԹՆԵՐԸ

Լսարանին հերթական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ 4 Ապրիլ, Շաբաթ գիշեր, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ :

Դասախօս՝

### ՓՐՈՖ. ՖՐ. ՖԷՅՏԻ

Նիւթը՝ Տեսութիւն մը բախդատական քերականութեան մասին :

Դասախօսութեան սրբիրը հայկական նուագ եւ թէյի սպասարկութիւն : Մուտքը ազատ է : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ - ՀԱՒԿԹԱԽԱՂ

ԶԱՏԿՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպութեամբ Հ. . Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի : 28 Մարտ, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս Պոմոնի Ազգային սրահին մէջ : Ծոխ յայտագիր : Մանրամասնութիւնները յաջորդով :

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.Ի

### ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ԶԱՏԻԿԻՆ

(29 Մարտ) Ալհամպրայի մէջ :
ժամը 21էն մինչեւ լոյս

**Orchestre**
**Jo valon et Gu Berthos**

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

## ԼԻՈՆԻ ՄԷՋ

THÉATRE MUNICIPAL
DE VILLEURBANNE

կազմակերպուած

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

Ուրբաթ, Ապրիլ 3, ժամը 20·30ին
կը ներկայացուին

1.— ԱԴՈՒԱՐԴ ԻՇԽԱՆ
(Տռամ Հայ – Մակեդոնական շրջանէն)

2.— L'article 330, G. Courteline
(Comédie en un acte)

3.— ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ
(Կատակերգութիւն)

Տոմսերը՝ նոյն օրը՝ մուտքը :

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նոյն ներկայացումը Կիրակի (Ապրիլ 5) ժամը 15·30ին,

THEATRE MUNICIPAL DE VIENNE

### ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Ապրիլ 26, Կիրակի օր, ժամը 3, Պուրս տը Թրավայի մէջ, Համազգային սուգի օրուան տօնակատարութիւն :

Կը խնդրուի նկատի ունենալ :

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի առաւօտ ժամը 10·45ին : Կը խօսի պատուելի Սիսլեան : Նիւթ՝ «Անոր համար որ մեռաւ» :

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ

20, RUE JEMMAPES

ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք այս Կիրակի ժամը 10·45–ին : Կը խօսի՝ ՎԵՐ. Յ. ՀԵԼՎԱՃԵԱՆ :

Նիւթ՝ «Քրիստոսի Յարութեան բերած պարգեւները» :



## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՄԷԶՕՆ – ԱԼՖՈՐԻ ՔԱՂԱՔԱ. ՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԸ

28 ՄԱՐՏ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 8·30ԻՆ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ

ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ

Եւ հովանաւորութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան

ի նպաստ Ալֆորվիլի եկեղեցւոյն կից Ազգային Տան

Կը ներկայացուի

### ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

Կատակերգութիւն երեք արար

ՄՈՒՏՔ 300 ԵՒ 500 ՖՐԱՆՔ

Օր․ ՌՈԶԷԹ ՈՒՐՏԱՅԵԱՆ
Պ․ ԱՐԹԻՒՐ ԱԼԹՈՒՆԵԱՆ
Նշանուած
Փարիզ Մարտ 1959 Մարսէյլ

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Հ․ Յ․ Դ․ Արամ – Մխաքեան ենթակոմիտէի ընդհ․ ժողովը այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատոմսերով։

ՄԱՐՍԷՅԼ․— Հ․ Յ․ Դ․ հետեւեալ խումբերը եւ ենթակոմիտէները ժողովի կը հրաւիրուին, ուր ներկայ կ՚ըլլայ Շրջ․ Կոմիտէն։

Հայաստան, Գէորգ Չաւուշ, Վռամ – եան, Համազասպ, Ապրիլ 4, Շաբաթ օր, ժամը 21ին։ Պարտաւորիչ է բոլոր ընկերներու ներկայութիւնը։

ՄԱՐՍԷՅԼ․— Հ․ Յ․ Դ․ հետեւեալ ենթակոմիտէներն ու խումբերը ժողովի կը հրաւիրուին, ուր ներկայ կ՚ըլլայ Շրջ․ Կոմիտէն։

Ընկ․ Կարօ, Թաթուլ եւ Նիկոլ – Դուման, Ապրիլ 5, Կիրակի, ժամը 15ին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պար – տաւորիչ է։

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻՆ

Պ․ Օննիկ Պարսամեան երկու հազար ֆրանք կը նուիրէ Կապոյտ Խաչի օգախ – խութեան կայանին, զաւկական տօներու առթիւ։ (Ստանալ «Յառաջ»էն)։

### ՄԱՐՍԷՅԼԻ

Համազգայինի ընդհանուր ժողովը

Տեղի կ՚ունենայ 5 Ապրիլ, Կիրակի կէս օրէ ետք, ժամը հինգին, Ահարոնեան Ակումբը, (26 Րիւ տէ Քոնվալէսան)։

Օրակարգ․— Ա) Անցեալ շրջանի հաշ – ուետուութիւն։ Բ) Նոր վարչութեան ընտրութիւն։

Բոլոր անդամներուն ներկայութիւնը անհրաժեշտ է։

### ՆՈՒԷՐՆԵՐ

Տէր եւ Տիկին Եմմիեան եւ զաւակները կը նուիրեն Գրիգոր Մանտիկեանին մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հազար ֆր․, Նոր Սերունդին, 1000 ֆր․ Կապոյտ Խաչին, 1000ֆր․ Եկեղեցիին (Առնուվիլ), եւ հազար ֆրանք «Յառաջ»ին բարգա – ւաճման համար։ Ստանալ Ս․ Մարտի – րոսեանէն։

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ

### ԱՄՍՕՐԵԱՅ ԵՐԵԿՈՅԹՆԵՐԸ

Լսարանին հերթական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ 4 Ապրիլ, Շաբաթ գիշեր, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ։

Դասախօս՝

### ՓՐՈՖ. ՖՐ. ՖԷՅՏԻ

Նիւթը՝ Տեսութիւն մը համեմատական քերականութեան մասին։

Դասախօսութեան սրիզը հայկական նուագ եւ թէյի սպասարկութիւն։ Մուտքը ազատ է։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

×

Վարչութեան անդամները ժողովի կը հրաւիրուին այս Չորեքշաբթի, ժամը 6·30ին, սովորական տեղը։ Ստիպողական ներկայութիւն։

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

THÉATRE MUNICIPAL
DE VILLEURBANNE

կազմակերպուած

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

Ուրբաթ, Ապրիլ 3, ժամը 20·30ին
կը ներկայացուին

1·— ԱԴՈՒԱՐԴ ԻՇԽԱՆ
(Տռամ Հայ – Մակեդոնական շրջանէն)

2.— L'article 330, G. Courteline
(Comédie en un acte)

3·— ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ
(Կատակերգութիւն)

Տոմսերու վաճառում նոյն օրը՝ սրա – հի մուտքին։

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նոյն ներկայացումը Կիրակի (Ապրիլ 5) ժամը 15·30ին,
THEATRE MUNICIPAL DE VIENNE



Imprimerie Spéciale
du Journal "Haratch"

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած ԹՈՔԱՏԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ
Եւ Ռոնի – Սու – Պուայի ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
ի նպաստ ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ և ՎԵՑ ՔԱՀԱՆԱՆԵՐՈՒ ՇԻՐՄԻՆ ԿԱՌՈՒՑՄԱՆ

Հովանաւորութեամբ եւ նախագահութեամբ Կաթ․ Պատուիրակ
ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ․ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ Կը խօսի Պ․ Յ․ ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆ
Շաբաթ, Ապրիլ 4, երեկոյեան ժամը 8·45ին, Փօլ Ֆարալիճի սրահին մէջ, 21 իվ – Թուտիճ, Փարիզ, մէթրօ՝ Ժաք Պոնսէրժան

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ Փարիզի երիտասարդ ար – ուեստագէտներու։ Երգ, նուագ, պար ղեկավարութեամբ
Տիկին ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ Խմբավար Ե․ ԳՐԻԳՈՐԵԱՆ
Կը ներկայացուի նաեւ Հայաստանէն նոր եկած ֆիլմ մը
ՄՕՐ ՄԸ ՍԻՐՏԸ Մուտք 400 եւ 300 ֆրանք

Տոմսերը կը ծախուին Փարիզի եւ արուարձաններու հայկական եկեղեցիները եւ Սամուէլեան, Պարսամեան, Բալուեան գրատուները։





## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ 44ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ԿԻՐԱԿԻ, 5 ԱՊՐԻԼ, ԺԱՄԸ 15էն 24

CERCLE MILITAIRE — PLACE ST. AUGUSTIN

ՋԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՊԱՐԵՐ ՏԱՐԱԶՈՎ, ԵՐԿՐԷՆ ՆՈՐ ՖԻԼՄ

Բ․ մաս․— ժամը 18էն 24

ՊԱՐԱՀԱՆԴԷՍ - ԽՐԱԽՃԱՆՔ

GONGOND ՈՒԹ ՀՈԳԻՆՈՑ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**(Sous la direction de KASSAPIAN - Exculsivité «Reo Recording Artist»**

De retour du Canada se produit la première fois à Paris

**Formation Typique de Jazz Sud-Américain**

**TANGOS sous la direction du célèbre Jacques VALENTE**

AMBIANCE

ԱՊՐԻԼ 5ԻՆ ԲՈԼՈՐԴ՝ ՍԷՐՔԼԸ ՄԻԼԻԹԷՐ տօնելու համար Վասպուրականի յաղթանակը։